Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*


# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԳՅՈՒՂՈՒՄ

*Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, համակված հայրենասիրական վեհ զգացումներով, ոչ մի ջանք չի խնայում բարձր ցուցանիշներով ավարտելու ընթացիկ տարվա գյուղատնտեսական աշխատանքները, սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելու բերքը։*

*Հսկայական խնդիրներ են դրված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առաջ։ Պահանջվում է ավելի շատ բերք ստանալ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների գծով, կազմակերպված սկսել և ավարտել բերքահավաքը, բարձրացնել անասնապահության մթերատվությունը, պատվով կատարել պետական բոլոր պլանները։*

*Գյուղատնտեսության առաջ ծառացած այդ պատասխանատու խնդիրների հաջող կատարման կարևոր պայմաններից մեկը պարտիական-քաղաքական, ագիտացիոն-*

մասսայական աշխատանքի հմուտ կազմակերպումն է։ Բոլշևիկյան ագիտացիան, ինչպես սովորեցնում է Լենինի—Ստալինի պարտիան, եղել է և մնում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության, մեր տնտեսական-քաղաքական խնդիրները հաջողությամբ լուծելու համար նրանց մոբիլիզացնելու լավագույն միջոցներից մեկը։

Գյուղատնտեսական աշխատանքների ներկա վճռական էտապում քաղաքական ագիտացիայի խնդիրն է՝ մոբիլիզացնել կոլխոզային գյուղացիության, սովխոզների ու ՄՏ կայանների աշխատավորության ուժերը բերքահավաքը բարձր կազմակերպվածությամբ և ագրոտեխնիկական սեղմ ժամկետներում կատարելու համար։

Ագիտատորները պետք է հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ, ՄՏ կայանի, սովխոզի աշխատող կարողանա հասկանալ բերքահավաքի և մթերումների քաղաքական խոշոր նշանակությունը, ցույց տան այդ կամպանիայի կարևորագույն նշանակությունը մեր երկրի հզորության հետագա ամրապնդման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Անհրաժեշտ է բերքահավաքի նախապատրաստման և անցկացման ընթացքում լայնո-



րեն օգտագործել բոլշևիկյան ագիտացիայի բազմաթիվ ձևերն ու մեթոդները, կազմակերպել հետաքրքիր և բովանդակալից զրույցներ, օգտագործել պատի թերթերը, «փլյիչովկա»-ները, ռադիոն, ցուցադրական նյութերը, կազմակերպել կոլխոզային դաշտերի առաջավոր մարդկանց հանդիպումներ, ապահովել դաշտում կոլխոզնիկների կուլտուրական սպասարկումը և այլն։

Որպեսզի ագիտացիան լինի գործարար, կոնկրետ և նպատակային, անհրաժեշտ է, որ զրույցից առաջ ագիտատորը ծանոթանա այն բանին, թե իր ունկնդիրները ինչպես են աշխատել վերջին օրերին, ով ինչպես է կատարել իր առաջադրանքը, ինչպիսին է աշխատանքների որակը և այլն։ Ագիտացիան գործնական դարձնելու նպատակով, ագիտատորը պետք է խորը թափանցի կոլխոզային տնտեսության ներքին կյանքի մեջ, համարձակ քննադատի հետ մնացողներին և արմատավորի առաջավորների օրինակելի նախաձեռնությունները։ Այդպես են աշխատում Նոր Բայազետի Նորադուս գյուղի ագիտատորներ Ղևոնդ Ղազարյանը, Գուրգեն Հակոբյանը, Ջանիբեկ Հակոբյանը և շատ ուրիշներ։

Պարտիայի և սովետական կառավարու-

թյան կողմից առաջադրված խնդիրները բարձր ցուցանիշներով կատարելու գործում կարևոր նշանակություն ունի սոցիալիստական մրցության ծավալումը։

Սոցիալիստական մրցությունը բոլշևիկորեն գլխավորելու և առաջ մղելու լավագույն օրինակ է ցույց տալիս Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան կոլխոզի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը։ Կոլխոզի բոլոր բրիգադները ապահովված են քաղաքականապես պատրաստված ագիտատորներով, որոնք իրենց ամենօրյա զրույցներով ու անձնական օրինակով մոբիլիզացնում են կոլխոզի աշխատողներին սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքելու բերքը։ Սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ կոլխոզը 600 հեկտար հացահատիկը հնձեց 12 օրում և ժամկետից շուտ կատարեց պետությանը հացահատիկ հանձնելու պարտավորությունը։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության կազմակերպման նոր փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Ուստի ագիտատորների



առաջնահերթ խնդիրն է՝ ընդհանրացնել բարձր բերքի առաջավորների հարուստ փորձը, տեսնել այն նորը, առաջադիմականը, որը ծնվում է ժողովրդի ստեղծագործական նախաձեռնությամբ, կարողանալ իմաստավորել այդ նորը և տարածել ու արմատավորել առաջավորների նվաճումները, սովորեցնել ու դաստիարակել աշխատավորական լայն մասսաներին այդ կոնկրետ օրինակներով։ Ագիտատորը գյուղատնտեսության առաջավորին պետք է ներկայացնի ոչ թե ընդհանրապես, ընդհանուր խոսքեր ասելով նրա մասին, այլ պետք է պատմի նրա կոնկրետ աշխատանքի մեթոդների մասին, պետք է պրակտիկ կերպով ցույց տա, թե ո՛րն է նրա աշխատանքում յուրահատուկը, նորը, լավը, առաջադիմականը, ցույց տա համոզիչ կերպով, փաստերով։

Մեր ագիտատորների զգալի մասը կոլխոզային արտադրության առաջավորներ են, նրանք ոչ միայն պետք է մասսայականացնեն գյուղատնտեսության նորագույն նվաճումները, այլև հենց իրենց աշխատանքի փորձով սովորեցնեն կոլխոզնիկներին։

Այդպես է աշխատում, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի կոլխոզի օղակավարուհի, Սոցիալիստական

Աշխատանքի Հերոս Ասանեթ Սիմոնյանը։ Բրիգադի անդամներին նա պատմում է իր փորձի մասին և կիրառելով իր աշխատանքի մեթոդները, պրակտիկ կերպով ցույց է տալիս, թե ինչպես պետք է մշակել և աճեցնել բամբակի պլանտացիաներ։ Ագիտատորի այս աշխատանքը տվել է իր արդյունքը։ Այդ բրիգադը, ագրոտեխնիկական կանոններով մշակելով բամբակի պլանտացիաները, աճեցնում է առատ բերք։

Սակայն մեր ոչ բոլոր ագիտատորներն են, որ խորապես հասկանում են գյուղատնտեսական աշխատանքների այս կարևոր ժամանակաշրջանում իրենց վրա դրված պարտականության ամբողջ լրջությունն ու պատասխանատվությունը։ Որոշ տեղերում ագիտացիոն աշխատանքը տարվում է չոր ու անկենդան, կտրված գյուղատնտեսության առջև դրված գործնական խնդիրներից։ Օրինակ՝ Նոյեմբերյանի շրջանի մերձարևադարձային կուլտուրաների սովխոզի ագիտատորները մինչև այժմ բանվոր-ծառայողների մեջ չեն մասսայականացրել մեր ռեսպուբլիկայի հետպատերազմյան հնգամյա պլանի կատարման արդյունքները, 1951 թվին խոտհունձն ու կերի սիլոսացումը անցկաց-



նելու միջոցառումների մասին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը։ Բրիգադներում չեն մասսայականացնում առաջավորների փորձը, չեն օգնում լայն ծավալելու սոցիալիստական մրցությունը։ Խոտհնձի բրիգադում աշխատող բանվորները մտել են սոցմրցման մեջ, բայց նրանք մինչև այսօր չգիտեն, թե ինչ պարտավորություններ են ստանձնել և ինչպես է այն կատարվում։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը բերքահավաքը նախապատրաստելու և կազմակերպված անցկացնելու գործում զգալի հաջողություններ է ձեռք բերել։ Այժմ անհրաժեշտ է քաղաքական-մասսայական աշխատանքի լայն ծավալման միջոցով ամրապնդել ձեռք բերված հաջողությունները և մոբիլիզացիայի ենթարկել աշխատավորության ուժերը՝ 1951 թվականի բերքահավաքը սեղմ ժամկետներում ու կազմակերպված անցկացնելու, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության շեշտակի վերելք ստեղծելու համար։



# ՖԻԶԿՈՒԼՏՇԱՐԺՄԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

*Սովետական պետությունը, բոլշևիկների պարտիան և անձամբ ընկեր Ստալինը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում մեր ժողովրդի, և հատկապես երիտասարդության ֆիզիկական դաստիարակության նկատմամբ։*

*Ելնելով մեր երկրում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման պետական նշանակությունից, ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն 1948 թվականի դեկտեմբերի 17-ի հայտնի որոշման մեջ ֆիզկուլտուրայի աշխատանքում գլխավոր խնդիրն է համարում՝ մասսայական ֆիզկուլտ շարժման ծավալումը, սպորտային վարպետության մակարդակի բարձրացումը և, դրա հիման վրա, սովետական սպորտսմենների կողմից մոտակա տարիներին սպորտի կարևորագույն ձևերի գծով*



*համաշխարհային առաջնության նվաճումը։*

*Ֆիզկուլտուրան և սպորտը սովետական մարդկանց հնարավորություն են տալիս ամրացնելու առողջությունը, երկարացնելու կյանքը, դառնալ ուժեղ, համարձակ, գեղեցիկ, դժվարություններից չվախեցող, կոմունիզմ կառուցող քաջարի մարտիկներ։*

*Մեր երկրում գնալով ավելի ու ավելի լայն հնարավորություններ են ստեղծվում ֆիզկուլտուրայի և սպորտի լայն զարգացման համար։ Աշխատավորության տրամադրության տակ են դրվում նորանոր սպորտային դաշտեր, հրապարակներ, լողարաններ, անհրաժեշտ շենքեր և նյութական միջոցներ։ ՍՍՌՄ 1951 թվականի պետական բյուջեում առողջապահության և ֆիզկուլտուրայի համար նախատեսված է 21,9 միլիարդ ռուբլի։*

*Սովետական մարմնամարզիկների, բռնցքամարտիկների, ըմբշամարտիկների, բասկետբոլիստների, վոլեյբոլիստների, թեթև ատլետների, շախմատիստների՝ համաշխարհային արենայում վերջին մի քանի տարիներին տարած փայլուն հաղթանակները խոսում են մեր երկրում ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականության, ժողովրդականության մասին։*

Միայն 1950 թվականին մեր երկրում ըստեղծվեցին 22.000 ֆիզկուլտ կոլեկտիվներ, որը հնարավորություն է տվել բազմապատկելու ՊԱՊ-ի կրծքանշանակիրների շարքերը, սպորտսմեն կարգայինների շարքերը։ Անցած տարի սպորտի հիմնական ճյուղերից սահմանված է 422 համամիութենական ռեկորդ, որից 16-ի արդյունքները գերազանցում են համաշխարհային ռեկորդներից։

Այլ է դրությունը կապիտալիստական երկրներում։ Այնտեղ, ինչպես ամեն ինչ, սպորտը կրում է հակաժողովրդական բնույթ։ Սպորտը այնտեղ օգտագործում են որպես մարդկանց բթացման միջոց, գանգստերներ, համաշխարհային թալանիչներ պատրաստելու միջոց։

Ամերիկայում ամենուրեք բացարձակ կերպով քարոզում են ամեն տեսակի ճիվաղային մտքեր, որոնց հասնելու համար օգտագործվում է նաև սպորտը։ Ֆլորիդյան համալսարանի ռեկտոր Շենսը ամերիկյան մի թերթում «Սպորտային թեմայի շուրջը» հոդվածում գրում է. «Մենք պետք է անցկացնենք տոտալ պատրաստականություն, հիմ-



նըված ջունգլիների օրենքի վրա։ Ամեն ոք պետք է սովորի սպանել»։

Ճիվաղ ռեկտորի այս խոսքերը պատահականություն չեն. այդ տենդով են տարված Ուոլ-Ստրիտի բոլոր տերերը։

Շնորհիվ լենինյան—ստալինյան ազգային քաղաքականության, Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաներում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի հետ միասին, զարգանում է և սպորտը։ Միայն մեր ռեսպուբլիկայում՝ Սովետական Հայաստանում տասնյակ հազարավոր պատանիներ և աղջիկներ, բանվորներ և ծառայողներ ֆիզիկական կուլտուրայի կոլեկտիվներում պարապում են սպորտով։ Ավելի քան 11 միլիոն ռուբլի ծախսում են միայն ֆիզկուլտ-կազմակերպությունները։ Օրեցօր նոր սպորտային բազաներ են ստեղծվում, որոնք հնարավորություն են տալիս ռեսպուբլիկայում մասսայական դարձնելու ֆիզկուլտուրան և բարձրացնելու ըսպորտային վարպետությունը։

Հայաստանի ֆիզկուլտ կազմակերպություններում այժմ աշխատում են մի քանի հարյուր ֆիզկուլտուրային բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ, մոտ 25

սպորտի վարպետներ և սպորտի վաստակավոր վարպետներ։ Հայաստանի սպորտսմեններից մոտ 70 հոգի մտնում են Սովետական Միության և սպորտային ընկերությունների հավաքական թիմերում։ Հայաստանի սպորտսմեններից շատերը բազմաթիվ անգամ միջազգային մրցումներում տարած հաղթանակներով պաշտպանել են սովետական սպորտի պատիվը։

Ավագ սպորտսմենների կողքին ամեն օր մրցումների, սպարտակիադաների և սպորտային այլ միջոցառումների ժամանակ հանդես են գալիս նոր, տաղանդավոր սպորտսմեններ։ Մոտ ժամանակներս Բեռլինում կայանալիք երիտասարդության և ուսանողության համաշխարհային փեստիվալին Հայաստանից, անվանի սպորտսմեններ Հրանտ Շահինյանի և Էդուարդ Արիստակեսյանի հետ միասին, պետք է մասնակցեն նաև ֆիզկուլտ տեխնիկումի 3-րդ կուրսի ուսանողներ, շնորհալի մարմնամարզիկներ Ջավեն Մաթևոսյանը և Ալբերտ Ազարյանը, ինչպես նաև Երևանի քաղաքային սպորտ դպրոցի սան, ըմբիշ, սպորտի վարպետ Ռոբերտ Վարդանյանը։

Հայաստանի ֆիզկուլտ շարժման մեջ նոր մեծ իրադարձություն է հանդիսանում կոլխոզային սպորտ ընկերության ստեղծումը։



Գյուղական բնակչության շրջանում ֆիզկուլտուրային շարժման հետագա վերելքի անհրաժեշտությունից ելնելով, կառավարության որոշմամբ մեր ռեսպուբլիկայում նույնպես ստեղծվելու է «Կոլտնտեսական» կամավոր գյուղատնտեսական սպորտ ընկերություն, որը հանդիսանալու է կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների, գյուղական ինտելիգենցիայի և նրանց ընտանիքի անդամների մասսայական ֆիզկուլտուրային կազմակերպություն։

Աշխատավորության, հատկապես երիտասարդների մեջ ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվելու սեր դաստիարակելու, ֆիզկուլտ կազմակերպություններին օժանդակելու գործում շատ անելիքներ ունեն ազիտատորները։ Ռեսպուբլիկայի համարյա թե յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկությունում, կոլխոզում, խոշոր նորակառույցում ստեղծված է ֆիզկուլտուրայի կոլեկտիվ։ Բայց դեռևս կան շատ ֆիզկուլտ կոլեկտիվներ, որոնք գոյություն ունեն ձևականորեն, չեն ընդգրկել անհրաժեշտ քանակությամբ մարդկանց։ Զրույցների ժամանակ ագիտատորներն իրենց ունկնդիրներին պետք է բացատրեն մեր երկրում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման վերաբերյալ պար-

տիայի և կառավարության որոշումները, խոսեն ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվելու անհրաժեշտության մասին, պատմեն առվետական սպորտսմենների ձեռք բերած նվաճումների մասին։ Ագիտատորները պետք է օգնեն պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական և ֆիզկուլտ կազմակերպություններին հասնելու այն բանին, որ ոչ մի երիտասարդ տղա և աղջիկ չմնա առանց ՊԱՊ-ի կրծքանշանի նորմաները հանձնելու։ Դրա համար անհրաժեշտ է խոսել յուրաքանչյուր երիտասարդի հետ, քաջալերել նրան սպորտով զբաղվելու և այդ նորմաները հանձնելու։

Ագիտատորներն իրենց բոլոր ուժերով պետք է օգնեն մեր ռեսպուբլիկայում ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքները զգալիորեն բարելավելու, ֆիզկուլտ շարժումն իսկապես մասսայական դարձնելու գործին։

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ





## ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը, անշեղորեն կենսագործելով պարտիայի ու կառավարության դիրեկտիվները, ընկեր Ստալինի ցուցումները, տարեց-տարի զգալի հաջողություններ է ձեռք բերում գյուղատնտեսության զարգացման, հանրային տընտեսության ամրապնդման և իր նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։

Նշանակալից են ռեսպուբլիկայի կոլխոզների նվաճումները հանրային մթերատու անասնաբուծության զարգացման բնագավառում։ Նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին ռեսպուբլիկայի կոլխոզներում հանրային անասունների գլխաքանակն աճել է հետևյալ չափով. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 30 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝

75,2 տոկոսով, խոզերինը՝ 124 տոկոսով։ Իսկ թռչունների գլխաքանակը նույն այդ ժամանակամիջոցում ավելացել է 3,5 անգամ։

Սակայն պետք է ասել, որ կոլխոզներում անասունների գլխաքանակի այդ մեծ աճմանը չի զուգակցել նրանց մթերատվության բարձրացումը։ Անասունների մթերատվությունը դեռևս չափազանց ցածր է և չի գերազանցում 1940 թվականի մակարդակը։

Հայտնի է, որ Հայաստանի պայմաններում, որը հարուստ է բնական խոտհարքներով ու արոտավայրերով (դրանք կազմում են ռեսպուբլիկայի ավելի քան 40 տոկոսը), անասնաբուծության զարգացումը հիմնականում կախված է ձմեռային կերի բազայի առկայությունից, այն բանից, թե որչափով անասունները մսուրային շրջանում ապահովված են կերով։

Կոլխոզները մսուրային շրջանի համար 1950 թվականին շատ ավելի կեր էին կուտակել, քան նախորդ տարիներին։ Չնայած դրան, ամեն մի գլուխ անասուն (փոխարկված խոշորի) ապահովված է եղել միջին հաշվով 13 ցենտներ կոպիտ կերով, որի ավելի քան 45 տոկոսը կազմել են հարդն ու ծղոտը։ Ահա թե ինչու «...կերի հարցը շա-



րունակում է մնալ որպես չլուծված և կոլխոզների մեծ մասում խոչընդոտ է հանդիսանում անասունների մթերատվության բարձրացմանը»,— նշել է ընկ. Գր. Հարությունյանը Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 15-րդ համագումարում։

Անասունների մթերատվության և առհասարակ հոտի վերարտադրության վրա խիստ բացասաբար է ազդել մեծ չափերի հասնող ստերջությունը։

Մթերատվության բարձրացման, ինչպես նաև անասունների գլխաքանակի պահպանման գործում իր հերթին մեծ դեր պետք է խաղա անասունների խնամքի ճիշտ կազմակերպումը։

Կերի բազա ստեղծելու, ստերջությունը վերացնելու, խնամքը բարելավելու հետ միասին անասնաբուծության զարգացման գործում կարևոր նշանակություն ունի անասունների ապահովումը բարեկարգ, տաք ու լուսավոր շենքերով։ Ճիշտ է, վերջին տարիներին, մանավանդ հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի ընդունումից հետո, ռեսպուբլիկայում զգալի աշխատանք է կատարվել անասնապահական շենքերի կառուցման գործում։

Միայն 1949 և 1950 թվականներին ռեսպուբլիկայի կոլխոզներում կառուցվել է ավելի քան երկու հազար անասնապահական օբեկտ։ Սակայն հանրային անասունների մեծ մասը տեղավորված է ոչ տիպային, այլ հարմարեցված անասնապահական շենքերում։ Դրա հետ մեկտեղ, քիչ չեն այն դեպքերը, երբ տաքացման անվան տակ, անասնապահական անգամ տիպային շենքերը զրկված են անհրաժեշտ քանակությամբ լույսից՝ քարով շարում և սվաղում են լուսամուտները, փոխանակ ապակիներ գցելու։ Անասնապահական ոչ բոլոր նոր շենքերն են, որ օդափոխության սարքեր ունեն։ Անասնապահական շենքերը պետք է լինեն լուսավոր, տաք, բարեկարգ, ունենան մաքուր օդ։

Մեծ նվաճում պետք է համարել Հայաստանի կոլխոզների անցումը հորթերին կրծքով կերակրելու հին, պապենական հետամնաց մեթոդից՝ հորթերին ձեռքով կերակրելու մեթոդին։ Այդ մեթոդը, որ լավագույն միջոցն է հորթերի օրական քաշ-աճն ավելացնելու, ստամոքսա-աղիքային հիվանդությունները և անկումը խիստ կերպով կրճատելու համար, ընթացիկ՝ 1951 թվականին լայնորեն տարածվում է բոլոր տեղերում։ Հորթերի ձեռքով կերակրելու մեթոդին անց-



նելու շնորհիվ, 1950 թվականին Ղուկասյանի շրջանի շատ կոլխոզներում հորթերի օրական միջին քաշ-աճը հասցվեց 500—600 գրամի, իսկ Ջույգաղբյուր և Ղուկասյան գյուղերի կոլխոզներում՝ մինչև 700 գրամի։ Այդպիսի ցուցանիշների են հասել նաև Կալինինոյի, Ստեփանավանի, Նոր Բայազետի, Ախուրյանի և մի շարք այլ շրջանների շատ կոլխոզներ։

Կարելի է շատ օրինակներ բերել, երբ կոլխոզները, նույնիսկ զոոտեխնիկական միջոցառումները ոչ լրիվ կիրառելու պայմաններում էլ, փոքր ինչ լավացնելով կերակրումը, խնամքն ու պահպանումը, զգալի արդյունքների են հասնում անասնաբուծության զարգացման գործում։ Այսպես, Բերիայի անվան շրջանի Շենգավիթ գյուղի կոլխոզը անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցրեց միջին հաշվով 1648 լիտրի՝ 1949 թվականի 480 լիտրի փոխարեն։ Ստեփանավանի շրջանի Ուռուտ և Ամասիայի շրջանի Ղուլիքենդ գյուղերի կոլխոզները անցյալ տարի յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը հասցրին 1.208 լիտրի՝ 1949 թվականի 750—800 լիտրի դիմաց։ Նոր Բայազետի կոլխոզները 1950 թվականին յուրաքանչյուր

ոչխարից միջին հաշվով ստացան 2,33 կիլոգրամ բուրդ, 1949 թվականի 1,42 կիլոգրամի փոխարեն։ Կալինինոյի և Շամշադինի շրջանների կոլխոզները ոչխարների բրդատվությունը հասցրել են 2,2 կիլոգրամի՝ յուրաքանչյուր գլխից։ Բերիայի անվան շրջանի Ջարբախ և Կալինինոյի շրջանի Պրիվոլնոյե գյուղերի կոլխոզները յուրաքանչյուր խոզամերուից ստացել են 15 խոճկոր, իսկ Շենգավիթի կոլխոզը՝ 19, Ն. Կողբի կոլխոզը՝ 20 խոճկոր։ Հասկանալի է, որ այս ցուցանիշները չի կարելի առհասարակ բարձր ցուցանիշներ համարել, մանավանդ եթե հաշվի ենք առնում մեր հնարավորությունները ու հեռանկարները։

1951 թվականի հուլիսի 1-ի տվյալների համաձայն ռեսպուբլիկայի կոլխոզներում մթերատու անասունների հանրային գլխաքանակի ավելացման պլանը կատարվել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը 100,2 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 117 տոկոսով, խոզերինը՝ 103,5 տոկոսով, իսկ թռչուններինը՝ ընդամենը 37,2 տոկոսով։

Ինչպես ցույց են տալիս վերևում բերված տվյալները՝ առանձնապես լուրջ հետամնացություն է նկատվում թռչնաբուծության զարգացման գործում, որը հետևանք է այն



բանի, որ դեռևս շարունակվում է անասնաբուծության այդ կարևոր ճյուղի վնասակար թերագնահատումը՝ շրջանային գյուղատնտեսական մարմինների և կոլխոզային ղեկավարների կողմից։

Սակայն գլխաքանակի ավելացման պլանի կատարումը դեռ ոչ մի հիմք չի տալիս հանգստանալու։ Կոլխոզներում պետք է վերացվեն անասունների բոլոր տեսակի շռայլումները և կորուստները և ապահովվի անասնաբուծության զարգացման պետական պլանի կատարումը՝ տարվա վերջում։

Այժմ անասնաբուծության համար սկսվել է ամենապատասխանատու շրջանը՝ տեղի է ունենում խոտհունձը և կերերի սիլոսացումը, կովերի մասսայական կիթը, անասունների բտումն ու գիրացումը, զուգավորումը, անասնապահական շենքերի և սիլոսի աշտարակների շինարարությունը։ Այն բանից, թե որքան ճիշտ և լավ կկազմակերպվի այդ գործը՝ կախված կլինի հանրային անասնաբուծության զարգացման այս տարվա պետական պլանի կատարման հաջողությունը։

Անասնաբուծության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումներն անշեղորեն կենսագործելու համար գյուղատնտեսական աշխատողների ու-

ժերը մոբիլիզացնելու բնագավառում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։ Նրանք պետք է օգնեն կոլխոզնիկների և սովխոզների բանվորների մեջ անասնապահության սովետական առաջավոր գիտության տարածման գործին, հետևեն, որպեսզի գիտական հիմունքներով կազմակերպվի անասունների խնամքը յուրաքանչյուր կոլխոզում և սովխոզում։ Իրենց զրույցների ժամանակ ագիտատորները պետք է պատմեն առաջավոր անասնապահների փորձի, նրանց ձեռք բերած հաջողությունների մասին, միջամտեն, որպեսզի այդ փորձը կիրառվի իրենց մոտ։

Ռեսպուբլիկայի անասնապահները լայն պայքար են ծավալել անասնաբուծության առաջավորների հավաքի կողմից ստանձնված պարտավորությունները կատարելու համար։ Գյուղական ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ կազմակերպել, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, օգնել անասնաբուծության ֆրոնտի աշխատողներին՝ 1951 թվականին անասնաբուծության զարգացման բնագավառում նորանոր հաջողությունների հասնելու։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ
**Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու**

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ԵՐԿՈՒ ԱՇԽԱՐՀ, ԵՐԿՈՒ ԱՊՐԵԼԱԿԵՐՊ

Ագիտատո՛ր. նայիր ներքևում հրապարակված քարտեզին և այն ամենի մասին, ինչ որ տեսնում ես նրա վրա, պատմիր քո ունկնդիրներին։

Քարտեզի վրա դու տեսնում ես գիգանտ հիդրոէլեկտրակայանների, ջրանցքների, ոռոգիչ սիստեմների շինարարությունը, աշխատավոր մարդու շահերի համար բնությունը վերափոխելու՝ պատմության մեջ չտեսնված աշխատանք։ Այդ մեր Թանկագին Հայրենիքն է՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների հզոր Միությունը, որը Մեծ Ստալինի հանճարով ընթանում է դեպի կոմունիզմ։

Մեզ մոտ, ՍՍՌՄ-ում՝ ստեղծագործական աշխատանք, հոյակապ խաղաղ շինարարություն, աշխատավորների կենսամակարդակի սիստեմատիկ բարձրացում։

Այլ պատկեր է ներկայացնում կապիտալիստական աշխարհը։ Նրանց, կապիտա-

լիստների մոտ՝ սպառազինությունների կատաղի մրցավազք, նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստություն, գործազրկության և մասսաների աղքատացման անընդհատ աճ։



Մարդկության պատմության համար հինգ տարին շատ կարճ ժամանակամիջոց է. բայց ահա թե վերջին հինգ տարիների ընթացքում ինչ փոփոխություններ են տեղի ունեցել մեր՝ սոցիալիզմի երկրում։

Սովետական հասարակարգի շնորհիվ հետպատերազմյան առաջին հնգամյակի տարիներին մեր երկրում տեղի ունեցան համաշխարհային պատմական նշանակություն ունեցող վիթխարի փոփոխություններ, սովետական ժողովուրդը մի նոր, խոշոր քայլ կատարեց դեպի մարդկության լուսաշող ապագան՝ դեպի կոմունիզմ։

Հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի արդյունքները նորից և նորից հաստատում են սովետական հասարակարգի մեծագույն առավելությունը կապիտալիստական հասարակարգի նկատմամբ, նորից ու նորից վառ կերպով ցույց են տալիս, որ



ժողովրդի բարեկեցության սիստեմատիկ բարձրացումը սոցիալիստական հասարակարգի անխախտ օրենքն է։

Քաղաքի և գյուղի սոցիալիստական արտադրության անընդհատ աճի հիման վրա ՍՍՌՄ ազգային եկամուտը, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին ավելացավ 64 տոկոսով։ Հետպատերազմյան տարիների ընթացքում չորս անգամ իջեցվեցին արդյունաբերական և մթերային ապրանքների գները, որի հետևանքով աշխատավորությունը ստացավ մի քանի հարյուր միլիարդի հասնող խնայողություն։ Նախապատերազմյան մակարդակը զգալի կերպով գերազանցեց նաև ժողովրդական սպառումը։ Միայն 1950 թվականի ընթացքում Սովետական Միության ազգաբնակչությունը պետության հաշվին ստացել է 120 միլիարդ ռուբլու զանազան արտոնություններ և վճարումներ, այսինքն երեք անգամ ավելի, քան 1940 թվականին։ Հետպատերազմյան տարիներին չտեսնված մեծ չափերով ծավալվեց բնակարանների, դպրոցների, ակումբների և այլ կուլտուրական հիմնարկների շինարարությունը, քաղաքների, բանվորական ավանների ու գյուղերի բարեկարգումը։

Ահա հետպատերազմյան առաջին հնգամյակի ընթացքում սովետական ժողովրդի կենսամակարդակի աճը ցույց տվող մի քանի համառոտակի, բայց պերճախոս թվեր և փաստեր։

★ ՍՍՌՄ ազգային եկամուտը 1950 թվականին, 1940 թվականի հետ համեմատած, ավելացավ 64 տոկոսով, հնգամյա պլանով նախատեսված 38 տոկոսի փոխարեն։

★ Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում է կապիտալիստների դասակարգը, Սովետական Միությունում ամբողջ ազգային եկամուտը պատկանում է աշխատավորներին։ Միայն 1950 թվականին ՍՍՌՄ աշխատավորներն իրենց անձնական նյութական և կուլտուրական պահանջները բավարարելու համար ստացան ազգային եկամտի 74 տոկոսը։ Ազգային եկամտի մնացած 26 տոկոսը մնաց պետության, կոլխոզների և կոոպերատիվ կազմակերպությունների տնօրինության տակ՝ սոցիալիստական արտադրության ընդլայնման և համապետական ու հասարակական այլ կարիքների համար։

★ 1950 թվականի վերջում Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ



կար 39 միլիոն 200 հազար բանվոր և ծառայող։ Դա 7 միլիոն 700 հազար մարդով ավելի էր, քան կար 1940 թվականի վերջում։ Մեր երկրում գործազրկություն չկա և չի կարող լինել։

★ Բանվորների և ծառայողների, ինչպես նաև գյուղացիների եկամուտների ընդհանուր գումարը, 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին, համադրելի գներով, աճեց 62 տոկոսով։

★ ՍՍՌՄ-ում ժողովրդական սպառումը զգալիորեն գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ 1950 թվականին պետական և կոոպերատիվ խանութների կողմից ազգաբնակչությանը ավելի է վաճառված՝ (չհաշված տեղական ռեսուրսներից ստացվող ապրանքների վաճառքը) քան 1940 թվականին. միս և մսեղեն՝ 38 տոկոսով, ձկնեղեն՝ 51 տոկոսով, կենդանական յուղ՝ 59 տոկոսով, շաքար՝ 33 տոկոսով, կոշկեղեն՝ 39 տոկոսով, գործվածքեղեն՝ 47 տոկոսով։

★ Հնգամյակի տարիներին քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել և վերականգնվել են 100 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, գյուղական վայրե-

րում, վերականգնված և կառուցված է 2 միլիոն 700 հազար բնակելի տուն։

★ Տարրական, 7-ամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորողների թիվը հնգամյակի ընթացքում ավելացավ 8 միլիոն մարդով և 1950 թվականին հասավ 37 միլիոն մարդու։ 1950 թվականին բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էր 1 միլիոն 247 հազար ուսանող, այսինքն 435 հազարով ավելի, քան 1940 թվականին։

★ Ակումբների և մասսայական գրադարանների թիվը 1950 թվականին 15 տոկոսով ավելի էր, քան նախքան պատերազմը՝ կինոսարքավորումներինը՝ մեկ և կես անգամ ավելի, գրքերի տիրաժն ավելացավ 84 տոկոսով։

★ Սովետական պետության կողմից սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար կատարվող ծախսերը 1950 թվականին կազմեցին 116,8 միլիարդ ռուբլի, 1940 թվականին այդ նպատակների վրա ծախսված 41,7 միլիարդ ռուբլու փոխարեն։

Ահա նաև մեր ռեսպուբլիկայի՝ Սովետական Հայաստանի աշխատավորության կեն-



սամակարդակի աճը ցույց տվող թվեր և փաստեր։

★ 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին բանվորների և ծառայողների թիվն ավելացավ 60 տոկոսով, իսկ աշխատավարձի ֆոնդն ավելացավ 177 տոկոսով։ 1950 թվականին բանվորների միջին աշխատավարձը, 1940 թվականի համեմատությամբ, բարձրացավ մոտ 2 անգամ։

★ 1950 թվականին կոլխոզնիկներին տըրված դրամական եկամուտների գումարը, 1940 թվականի համեմատությամբ, համարյա կրկնապատկվել է, իսկ տեխնիկական և թանկարժեք կուլտուրաների շրջաններում այն ավելացել է 4—5 անգամ։

★ Պետական և կոոպերատիվ առևտրի սիստեմի խանութներում, 1940 թվականի համեմատությամբ, 1950 թվականին բնակչությանը վաճառվել է. բամբակե, բրդե և մետաքսե գործվածքներ՝ 30 տոկոսով ավելի, կոշկեղեն՝ 46 տոկոսով, գուլպեղեն՝ 62 տոկոսով, շաքար և հրուշակեղեն՝ 69 տոկոսով, լվացքի օճառ՝ 96 տոկոսով ավելի, իսկ այնպիսի սննդամթերքներ, ինչպիսիք են միսը, երշիկեղենը, յուղը և ձեթը՝ մոտ չորս անգամ ավելի են վաճառվել, քան 1940 թվականին։

★ Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղա-

կան վայրերում հիվանդանոցային մահճակալների թիվը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 58 տոկոսով, իսկ բժիշկների թիվը՝ 2,5 անգամ։ Սովետական Հայաստանում յուրաքանչյուր 684 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, մինչդեռ Ֆրանսիայում մեկ բժիշկ ընկնում է 1.652 մարդուն, իսկ Թյուրքիայում մեկ բժիշկ ընկնում է 8. 911 մարդուն։

★ Հնգամյակը հաջողությամբ է կատարվել նաև ժողովրդական կրթության բնագավառում։ Մասսայական դպրոցներում սովորողների թիվն այժմ 7 հազարով ավելի է հնգամյա պլանով նախատեսվածից։ 50 լրիվ և ոչ լրիվ միջնակարգ դպրոց ավելի է բացված, քան նախատեսված էր հնգամյա պլանով։

★ Հայկական ՍՍՌ-ում յուրաքանչյուր 1.000 բնակչին ընկնում է 8 ուսանող, մինչդեռ Շվեյցարիայում բնակչության յուրաքանչյուր 1.000 մարդուն ընկնում է 2 ուսանող, այսինքն չորս անգամ պակաս, քան Հայկական ՍՍՌ-ում, իսկ Թյուրքիայում բնակչության յուրաքանչյուր 1.000 մարդուն ընկնում է ընդամենը կես ուսանող։

★ Քաղաքներում և գյուղական վայրերում



1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ակումբների և մասսայական գրադարանների թիվը ավելացավ 46 տոկոսով, կինոսարքավորումների թիվը՝ ավելի քան 2 անգամ։ 1950 թվականին ռեսպուբլիկայում հրատարակված գրքերի ընդհանուր տիրաժը, համեմատած 1940 թվականի հետ, աճեց 73 տոկոսով։

★ Պետական ձեռնարկությունները, հիմնարկներն ու տեղական Սովետները, ինչպես նաև քաղաքների ու բանվորական ավանների բնակչությունը, պետական վարկի օգնությամբ, կառուցել են մեկ միլիոն 85 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, գյուղական վայրերում կառուցվել է 15 հազար բնակելի տուն։

***

Իսկ ահա թե ինչ բերեցին հետպատերազմյան անցած հինգ տարիները կապիտալիստական աշխարհին։

1947 թվականին Ամերիկայի Միացյալ Նահանգները եվրոպական մի շարք կապիտալիստական երկրների վզին փաթաթեցին տխրահռչակ «Մարշալլի պլանը» այն թմբկա-

հարելով որպես «անշահախնդիր մեծագույն օգնություն» այդ երկրներին՝ իրենց տնտեսությունները վերականգնելու, «բարգավաճման» պլան։ Իրականում այդ պլանը, որը հարստացրեց մի բուռն ամերիկյան միլիարդատերերի, սահմանափակեց եվրոպական այդ երկրների արդյունաբերությունը, հասցրեց աշխատավորների չտեսնված աղքատացման, գործազրկության ավելացման։

Եկավ 1951 թվականը։ Մարշալլի պլանը կենսագործող ադմինիստրացիան հրապարակեց զեկուցում, որի մեջ պարունակվում են մի շարք խոստովանություններ՝ այդ պլանի փաստական արդյունքների մասին։ Մասնավորապես զեկուցման մեջ ասված է. «Մարշալլականացված երկրներում սպառազինությունների մրցավազքը հանգեցրեց այդ պետությունների ժողովուրդների կենսամակարդակի անկման, գործազրկության աճման և սննդամթերքների գործածության իջեցման»։ Ինչպես նշված է զեկուցման մեջ, Ֆրանսիայում, Իտալիայում, Ավստրիայում, Արևմտյան Գերմանիայում կենսամակարդակը «մնում է վտանգավոր կերպով ցածր»։

Հանրագումարի բերելով Մարշալլի պլանի արդյունքները, ամերիկյան «Դեյլի կոմպաս» պրոգրեսիվ թերթը գրում է.



«Մարշալլի պլանը ձախողման ենթարկվեց, բայց կառավարական շրջանները կոծկում են փաստերը։ Մարշալլի պլանով օգնություն ստացող Եվրոպայի արագ վերականգնման լավատեսական կեղծ պատկերը, որը մշտապես նկարագրում են մեզ, ամբողջովին ոչնչանում է իրականության հանդեպ։ Այդ միֆը խորտակված է ներկայումս Արևմտյան Եվրոպայի հազարավոր քաղաքներում գոյություն ունեցող փաստական դրությամբ»։

Ահա նաև թվեր ու փաստեր կապիտալիստական մի շարք առանձին երկրներից, վերցրած նրանց իսկ մամուլից։

**ԱՄՆ**

★ 1950 թվականին մոնոպոլիաների եկամուտները հինգ և կես անգամ ավելի էին, քան 1939 թվականին։

★ 1951—52 ֆինանսական տարում ռազմական ծախսերը կանցնեն 70 միլիարդ դոլլարից։

★ 1950—51 բյուջետային տարում առողջապահության համար նախատեսված հատկացումները կազմում են պետական բյուջեի մեկ տոկոսից էլ պակաս։

★ 1950 թվականի հետ համեմատած, 1951 թվականին բնակարանային շինարարությունը կրճատվում է 40 տոկոսով։

★ 1950 թվականի դեկտեմբերին գները 168 տոկոսով բարձր էին 1937 թվականի գներից։

★ Անընդհատ ավելանում են աշխատավորների վզին դրված պատերազմական հարկերը. 1938 թվականին ազգաբնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ռազմական ծախսերը կազմում էին 8 դոլլար, 1949 թվականին՝ 150, 1950 թվականին՝ ավելի քան 300 դոլլար։

## ԱՆԳԼԻԱ

★ 1949 թվականին մոնոպոլիստների եկամուտները երեք անգամ ավելի էին, քան 1938 թվականին։ 1950 թվականին, 1949 թվականի հետ համեմատած, նրանք աճեցին 20 տոկոսով։

★ Աշխատավոր ազգաբնակչության եկամուտների 50 տոկոսից ավելին կլանում են ուղղակի և անուղղակի հարկերը։

★ Միայն 1951 թվականի ապրիլ ամսի առաջին տասնօրյակում երկրում 16 անգամ հայտարարվեց զանազան լայն սպառման առարկաների գների բարձրացում։



Անգլիական աշխատավորները 20—25 տոկոսով ավելի քիչ սննդամթերք են գործածում, քան մինչև պատերազմը։

## ԻՏԱԼԻԱ

★ Երկրում հաշվվում է երկու միլիոնից ավելի գործազուրկ (չհաշված կիսագործազուրկներին)։

★ 3 միլիոն 500 հազար մարդ սովի են դատապարտված։ 4 միլիոն իտալացիներ հնարավորություն ունեն միս ուտելու տարեկան միայն 2 անգամ։ Երկրի ազգաբնակչության կեսը զրկված է տանելի բնակարանային պայմաններից։ 5 միլիոն մարդ բնակարան չունի։ Երկրում դպրոցների և հիվանդանոցների սուր կարիք է զգացվում։ Կրճատվել է ծննդաբերությունը և ավելացել է մահացությունը։ 300 հազար երեխաներ հիվանդ են տուբերկուլյոզով։

★ Բանվորի միջին ամսական աշխատավարձը չորս անգամ քիչ է ապրելու համար անհրաժեշտ մինիմումից։

★ 1938 թվականի հետ համեմատած ձիթապտղի յուղի գինը բարձրացել է 80 անգամ, պանրինը և յուղինը՝ ավելի քան 75 անգամ, մսինը՝ 70 անգամ, կաթինը՝ 60 անգամ,

մրգեղենինը և բանջարեղենինը՝ համարյա
50 անգամ, ճարպինը՝ 45 անգամ և այլն։
Գների բարձրացումը շարունակվում է։
★ «Մարշալլի պլանի» կենսագործման ժա-
մանակաընթացքում միայն Նեապոլի շըր-
ջանում փակվեցին 21 խոշոր և մանր ձեռ-
նարկություն։ Մեքենաշինական և մետաղա-
մըշակման գործարանների 8 հազար բան-
վորներ զրկվեցին աշխատանքից, նույն
ընագավառի 8 հազար բանվորներ զբաղված
են ոչ լրիվ բանվորական օրով՝ ստանալով
աշխատավարձի միայն չնչին մասը։

ՖՐԱՆՍԻԱ

★ Միայն 1951 թվականի հունվար ամսին
բուսական յուղի գինը բարձրացավ 20 տոկո-
սով, բանջարեղենինը՝ 28, կենդանական յու-
ղինը՝ 13 տոկոսով։
★ Մարշալլի պլանի կենսագործման երեք
տարիներից հետո ազգաբնակչությունը
գնում է. կարագ՝ 35 տոկոսով պակաս, պա-
նիր՝ 37 տոկոսով պակաս, կենդանական
յուղ՝ 37 տոկոսով պակաս։
★ Պետության կողմից պատերազմական
կարիքների համար ծախսված յուրաքանչյուր
100 ֆրանկի դիմաց առողջապահության կա-



րիքների համար ընկնում է միայն 1 ֆրանկ։
★ 1939 թվականի համեմատությամբ ֆրան-
կի գնողունակությունը պակասել է 27 ան-
գամ։

ԹՅՈՒՐՔԻԱ

★ Անցած երեք տարիների ընթացքում
Թյուրքիային Մարշալլի պլանով բաց թող-
նըված դոլլարները ծախսվեցին ամերիկյան
սպառազինություն գնելու, ամերիկյան 600
խորհրդականներ պահելու, զինված ուժերն
ընդարձակելու, օդանավակայաններ, նավա-
հանգիստներ ու ստրատեգիական ճանա-
պարհներ կառուցելու վրա։
★ Միայն 1950 թվականին Բուրսայում փակ-
վել է 25 տեքստիլ ֆաբրիկա, Իզմիրում՝ ա-
վելի քան 25 ձեռնարկություն։ Մի քանի
տասնյակ ֆաբրիկաներ են փակվել Ստամ-
բուլում և այլ քաղաքներում։
★ Երկրում կա 2 միլիոնից ավելի գործա-
զուրկ։
★ 1950 թվականի օգոստոս ամսից մինչև
1951 թվականի մարտը կյանքի պայմաննե-
րը թանկացել են 45 տոկոսով։
★ Միայն Թոքախտից ամեն տարի մեռնում է
ավելի քան 40 հազար մարդ։

—O—

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱԿՏԻ ՀԱՄԱՐ

Ավելի քան երկու տարի է անցել այն օրից, երբ խաղաղության կողմնակիցների Համաշխարհային առաջին կոնգրեսը 1949 թվականի ապրիլին բոլոր երկրների ժողովրդական լայն մասսաներին կոչ արեց՝ միավորել իրենց ուժերը խաղաղությունը պաշտպանելու համար։ Այդ կոչը ամենալայն արձագանք գտավ ամբողջ աշխարհում, և այժմ հարյուր միլիոնավոր մարդիկ ակտիվ պայքար են մղում խաղաղության համար։ Խաղաղության կողմնակիցների կազմակերպված հզոր ճակատը վկայում է ժողովրդական մասսաների աճած քաղաքական գիտակցությունն ու ակտիվությունը, որոնք ըմբռնել են այն վտանգը, որ կախված է աշխարհի վրա։ Բոլոր երկրների ժողովուրդներն այժմ ավելի ու ավելի են համոզվում այն բանում, որ իմպերիալիստները չեն կարող ապրել առանց պատերազմի, առանց մարդկային արյան, առանց կողոպուտների ու բռնությունների։ Ժողովրդական մասսաներն այդ բանը ակնառու կերպով տեսան վերջին ժամանակներս տեղի ունեցած միջազգային իրադարձությունների օրինակով։ Ամերիկայի Միացյալ



Նահանգների կառավարող շրջանները, մի բուռն միլիարդատերերի շահերի համար, ձգտում են իրենց ենթարկել ամբողջ աշխարհը և պատրաստ են հանուն դրա նոր արյունալի պատերազմի մեջ նետել մարդկությանը։

Ամերիկյան իմպերիալիստների կողմից Կորեայում մղվող ագրեսիվ պատերազմը, Չինաստանի դեմ կատարված ինտերվենցիան, Վյետնամի, Մալայայի, Բիրմայի ժողովուրդների դեմ մղվող զավթողական պատերազմները ամբողջ աշխարհի բնակչության ամենալայն մասսաներին ցույց տվին, թե որտեղից է գալիս վտանգը։

Առանձին-առանձին պատերազմ հրահրելով Ասիայի ժողովուրդների դեմ, ամերիկյան իմպերիալիստները համաշխարհային տիրապետության հասնելու իրենց ձգտման մեջ հենվելով եվրոպական կապիտալիստական երկրների կառավարող շրջանների վրա, Արևմտյան Եվրոպան պլացդարմ և զինանոց են դարձնում՝ իրենց կողմից պատրաստվող ընդհանուր ագրեսիվ պատերազմի համար։ Այդ մասին են խոսում Ուոլ-Ստրիտի սպասավոր ամերիկյան գեներալ Էյզենհաուերի հրամանատարությամբ հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բանակ ստեղծելու փորձերը, այդ է վկայում Արևմտյան Գերմանիայի վերառազմականացումը։ Արևմտյան Եվրոպայում, Մերձավոր Արևելքում, Հեռավոր Արևելքում և մի շարք այլ երկրներում պատ-

րացված բազմաթիվ ռազմական բազաները նույնպես գլխովին մատնում են ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ դիտավորությունները։ Այս ամենը խոսում է միջազգային չափազանց լարված դրության ստեղծվելու մասին, ամերիկյան իմպերիալիստների և նրանց սատելիտների կողմից խաղաղությանն սպառնացող ռեալ վտանգի մասին։

Սակայն պատերազմի հրձիգների այդ ակտիվացումն է՛լ ավելի համախմբեց խաղաղության կողմնակիցներին, որոնք կրկնապատկել են իրենց ուժերը։

Խաղաղության կողմնակիցների շարժումը, որի նպատակն է մարդկությանը փրկել իմպերիալիստների կողմից դյութվող համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքից, աչքի է ընկնում իր կազմակերպվածությամբ ու մասսայականությամբ։

Հարյուր միլիոնավոր մարդիկ, անկախ իրենց քաղաքական հայացքներից և կրոնական համոզմունքներից, միավորվել են՝ աշխարհը պատերազմի արհավիրքներից փրկելու համար։ Այդ շարժումը, այդպիսով, իսկական մասսայական, համաժողովրդական շարժում է։ Ընդ սմին, խաղաղության կողմնակիցներն իրենց պայքարում չեն սահմանափակվում ընդհանուր դեկլարացիաներով ու ցանկություններով, այլ առաջարկում են կոնկրետ միջոցառումներ՝ խաղաղության գործը պաշտպանելու համար։ Այդպիսի



կոնկրետ առաջարկներից մեկն էր Ստոկհոլմի անցյալ տարվա Կոչը՝ ատոմային ռումբն արգելելու մասին, մի կոչ, որի տակ ստորագրեց ավելի քան 500 միլիոն մարդ։ Այդպիսի կոնկրետ միջոցառում է հանդիսանում ներկայումս հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու կոչը։ Այդ կոչը, խաղաղության օգտին մի շարք այլ որոշումների հետ միասին, ընդունվեց Խաղաղության Համաշխարհային Խորհրդի առաջին սեսիայում, որը տեղի ունեցավ Բեռլինում, այս տարվա փետրվարի 21—26-ին։ Անկասկած, Խաղաղության Համաշխարհային Խորհրդի առաջին սեսիայի ընդունած Կոչը՝ հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու մասին, հսկայական նշանակություն ունի խաղաղության համար մղվող պայքարում։ Այդ Կոչում ասված է.

«Ամբողջ աշխարհի միլիոնավոր մարդկանց ձգտումներին համապատասխան, անկախ համաշխարհային պատերազմի վտանգ ծնող պատճառների մասին նրանց ունեցած կարծիքներից, հանուն խաղաղության ամրապնդման և միջազգային անվտանգության ապահովման, մենք պահանջում ենք, որ Խաղաղության Պակտ կնքվի հինգ մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև։

Մենք մեծ տերություններից որևէ մեկի կառավարության հրաժարումը Խաղաղության Պակտ կնքելու

համար հանդիպում ունենալուց՝ կդիտենք որպես այդ կառավարության ագրեսիվ դիտավորությունների վկայություն»։

Ստորագրելով այդ Կոչը, Խաղաղության Համաշխարհային Խորհրդի անդամները մասսայական կամպանիա սկսեցին, կոչ անելով աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց՝ միանալ հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու պահանջին։ Այդ կոչն, անկասկած, արտահայտում է բոլոր երկրների ժողովրդական մասսաների խոհերն ու ձգտումները, որովհետև մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելը կվերացնի նոր պատերազմի սպառնալիքը։ Ընկեր Ստալինը դեռևս 1944 թվին մատնանշել է, որ խաղաղության պաշտպանությանն ուղղված գործողությունները կլինեն էֆեկտավոր, «...եթե հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի գլխավոր ծանրությունն իրենց ուսերի վրա կրած մեծ տերությունները առաջիկայում ևս գործեն միաբանության և համաձայնության ոգով»։

Սակայն երբ մեծ տերությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջանները հետպատերազմյան ժամանակաշրջանում մերժում են Սովետական Միության բոլոր խաղաղասիրական առաջարկները, որը ձգտում է խաղաղ ճանապարհով կարգավորել չլուծված պրոբլեմները և դրանով իսկ նպաստել ընդհանուր խաղաղության ամրապնդմանը։ Դա պայ-



մանավորվում է այն բանով, որ վերոհիշյալ երեք իմպերիալիստական երկրները շահագրգռված չեն խաղաղության պահպանման մեջ, որովհետև նրանք վարում են նոր պատերազմի հրահրման ագրեսիվ քաղաքականություն։ Հենց այդ պատճառով էլ նրանք ՄԱԿ-ում մերժեցին ատոմային զենքն արգելելու, սպառազինությունը կրճատելու և, վերջապես, մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ սովետական առաջարկները։

Խաղաղության Պակտ կնքելու պահանջի նպատակն է՝ հարկադրել Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի կառավարություններին, որ նրանք համաձայնվեն՝ դեռ չլուծված միջազգային բոլոր հարցերը խաղաղ ճանապարհով կարգավորելու։ Այսպիսով, Խաղաղության Պակտ կնքելու պահանջի հիմնական նպատակն է՝ կանխել պատերազմի սպառնալիքը։ Խաղաղության Պակտը բաց կլինի բոլոր խաղաղասեր պետությունների համար՝ նրան միանալու, բայց քանի որ խաղաղության պահպանման գլխավոր պատասխանատվությունն ընկած է մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Սովետական Միության, Չինաստանի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի վրա, ուստի անհրաժեշտ է, որ Խաղաղության Պակտն ստորագրեն, առաջին հերթին, այդ տերությունները։

Խաղաղության Պակտ կնքելու կոչը, որն արտահայտում է ժողովրդական մասսաների խոհերն ու տենչե-

մը, խաղաղ աշխատանքի նրանց ձգտումը, ամենալայն արձագանք գտավ բոլոր երկրներում։ Խաղաղության Պակտ կնքելու Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան վեր է ածվում բոլոր երկրների ժողովրդական մասսաների վիթխարի ցույցի, որոնք է՛լ ավելի սերտորեն են համախմբվում խաղաղության համար մղվող պայքարում։ Այժմ արդեն պարզ է դառնում, որ այդ կամպանիան իր մասշտաբներով կգերազանցի ատոմային զենքն արգելելու վերաբերյալ Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրություններ հավաքելու համար անցյալ տարի անցկացված կամպանիային։ Իսկ այդ խոսում է այն մասին, որ խաղաղության կողմնակիցների շարժումը գնալով էլ ավելի ակտիվ ու կազմակերպված շարժում է դառնում։ Այդ շարժմանը օրեցօր միանում են բնակչության ավելի ու ավելի լայն խավեր՝ անկախ իրենց սոցիալական դրությունից, քաղաքական հայացքներից և կրոնական համոզմունքներից։ Խաղաղության Պակտ կնքելու Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիային բանվորների, ինտելիգենցիայի ներկայացուցիչների, ծառայողների, մանր ձեռնարկատերերի հետ միասին այժմ մասնակցում են նաև շատ եկեղեցական գործիչներ և որոշ բուրժուական խմբավորումներ, որոնք հասկանում են, թե մարդկության համար ինչպիսի վտանգ է ներկայացնում համաշխարհային նոր պատերազմը։

Խաղաղության շարժման առաջին շարքերում են



ընթանում կոմունիստները, որոնք իրենց գործունեությամբ միշտ էլ արտահայտել են աշխատավոր մասսաների շահերը։ Կոմունիստներն այժմ ակտիվորեն մասնակցում են Խաղաղության Պակտ կնքելու Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիային։

Խաղաղության Պակտ կնքելու Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան դեռ նոր է ծավալվում, բայց արդեն մոտ 300 միլիոն մարդ ստորագրել է այդ Կոչը զանազան երկրներում։ Միլիոնավոր մարդիկ, խանդավառությամբ արձագանքելով Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Կոչին, այն ստորագրում են Ֆրանսիայում, Իտալիայում, Անգլիայում և մյուս երկրներում։ Այդ կամպանիան անց է կացվում նաև ռեակցիայի և իմպերիալիզմի լագերի որջում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որտեղ հասարակ մարդիկ սկսում են ավելի պարզ ըմբռնել այն վտանգը, որ բերում է իրենց կառավարող շրջանների քաղաքականությունը։ Խաղաղության Պակտ կնքելու կոչը կենդանի արձագանք գտավ բզկտվող, բայց կայուն կերպով և հաջողությամբ պայքարող Կորեայում, որտեղ կարճ ժամանակամիջոցում Կոչի տակ հավաքվեց 7 միլիոնից ավելի ստորագրություն, որից 433 հազարը՝ թշնամու օկուպացված շրջաններում։ Այս բոլորը խոսում է Խաղաղության Պակտ կնքելու համար մղվող կամպանիայի հսկայական հաջողության մասին։ Նշելով խաղաղության համար մղվող պայքարում ձեռք բերված այդ

հաջողությունները, ինչպես նաև Խաղաղության Պակտի նշանակությունը, Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոն մայիսի սկզբներին Կոպենհագենում ընդունեց մի բանաձև, որի մեջ ասված է.

«Պատերազմի դեմ մղվող պայքարը մտել է իր վճռական փուլը։ Ժողովուրդները տեսնում են, որ ամեն մի լուրջ բանակցության խանգարման և հարցերը զենքի ուժով լուծելու համար մղվող կատաղի պրոպագանդայի, ռազմական բյուջեների աճումը և սպառազինությունների մրցավազքը պատերազմը դարձնում են անխուսափելի։

Հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու համաշխարհային կամպանիան, Պակտ, որին կարող են միանալ բոլոր երկրները, կարող է կշեռքի նժարը թեքել հօգուտ խաղաղության։ Խաղաղության օգտին իսկական համաձայնություն ձեռք բերելու համար հինգ մեծ տերությունների ներկայացուցիչների հանդիպումը վերջ կդնի սառը պատերազմին և ուղի կհարթի ընդհանուր զինաթափման համար»։

Խաղաղության կողմնակիցների հզոր շարժման շնորհիվ՝ ամերիկյան իմպերիալիստները սիրտ չարին կորեական ժողովրդի դեմ ատոմային ռումբ կիրառել։ Խաղաղության կողմնակիցների շարժումն իր դերը կատարեց այն բանում, որ կրախի մատնվեցին ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ դիտավորությունները Կորեայի նկատմամբ, այնքա-



նով, որ իմպերիալիստները հարկադրված եղան համաձայնվել սովետական առաջարկին և բանակցություններ սկսել Կորեայում կրակը դադարեցնելու և զինադադար կնքելու համար։

Դրա հետ միասին, խաղաղության պաշտպանները հասկանում են, որ այդ հաջողություններն իրենց չպետք է հանգստացնեն, որովհետև իմպերիալիստների ագրեսիվ պլաններին ջախջախիչ հարված հասցնելու համար անհրաժեշտ է շարունակել իրենց շարքերի ընդլայնումն ու ամրապնդումը, խաղաղության կողմնակիցների շարժման մեջ ներգրավելով բնակչության նորանոր խավեր, որոնք որևէ պատճառով դուրս են մնացել այդ շարժումից։

Խաղաղության կողմնակիցների շարժման այժմյան վիթխարի թափն ու ծավալը ցույց են տալիս, որ ժողովրդական մասսաները խորապես ըմբռնել են խաղաղության մեծ ջատագով Ի. Վ. Ստալինի հետևյալ իմաստուն խոսքերը.

«Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ։ Պատերազմը կարող է դառնալ անխուսափելի, եթե պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծիքով մոլորեցնել ժողովրդական մասսաներին, նրանց խաբել և նրանց ներգրավել համաշխարհային նոր պատերազմի մեջ։

Ուստի, խաղաղության պահպանման համար լայն

կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։

Ժողովուրդները, որոնք ծարավի են խաղաղության, խաղաղության պահպանման գործը վերցնում են իրենց ձեռքը՝ այն մինչև վերջ պաշտպանելու վճռականությամբ լի։

Խաղաղության համար մարտնչողներին գլխավորում է մեծ սոցիալիստական տերությունը, որն իր գոյության առաջին իսկ օրերից, որպես կարևորագույն խնդիրներից մեկը, առաջադրել է պայքարը խաղաղության համար։ Այդ ժամանակվանից ի վեր մեր երկիրը անդուլ պայքար է մղում խաղաղության համար։ Սովետական Միությունը, ինչպես ասաց ընկեր Ստալինը, առաջիկայում ևս անհողդողդ կերպով կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականություն։ Բոլշևիկների պարտիայի, իր մեծ առաջնորդ, խաղաղության առաջին դրոշակակիր Ի. Վ. Ստալինի շուրջը համախմբված՝ սովետական ժողովուրդն իր ստեղծարար աշխատանքով առաջիկայում ևս կամրապնդի ընդհանուր խաղաղություն պահպանելու գործը։

Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 13 1951 г.

ՎՖ 02924 Պատվեր № 638 Տիրաժ 9300

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,
Երևան